Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1958



---


Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:




# ԱՆԳԼՈ-ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏՆԵՐԻ ԱԳՐԵՍԻԱՆ ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐԵՎԵԼՔԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԴԵՄ

*Համաշխարհային հասարակայնությունը մեծագույն հետաքրքրությամբ է հետևում իրադարձությունների զարգացմանը Մերձավոր և Միջին Արևելքում: Վերջին երկու տարվա ընթացքում արդեն երկրորդ անգամ իմպերիալիստներն այստեղ բորբոքում են պատերազմի հրդեհը, սպառնալիք ստեղծելով ընդհանուր խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար: 1956 թվականի նոյեմբերին Սուեզի ավանտյուրայի խայտառակ պարտությունից կատաղած, գաղութարարները ցանկանում են ռևանշ վերցնել Լիբանանում և Հորդանանում: Կարելի է չտարակուսել, սակայն, որ այս ավանտյուրան ևս խայտառակ վերջ կունենա: Չկա այնպիսի մի ուժ, որը կարողանար արգելակել Արաբական Արևելքի ժողովուրդների անզուսպ ձգտումը ազգային անկախության,*

իր բոլոր դրսևորումներով հանդերձ գաղութային լծից լիովին ազատագրվելու պայքարի նկատմամբ։

Մերձավոր և Միջին Արևելքում բուռն զարգացող իրադարձությունները իմպերիալիզմի գաղութային սիստեմի անկման, իր իսկ իմպերիալիզմի դատապարտվածության ամենացայտուն ապացույցներից մեկն են։

Ամերիկյան զորքերի ուխտադրուժ ներխուժումը փոքրիկ արաբական երկիր Լիբանան, դրա ետևից էլ անգլիական զորքերի ներխուժումը Հորդանան, կենդանի ուժի և ռազմական տեխնիկայի շարունակվող համակենտրոնացումը, խոսում են ագրեսորների հեռու գնացող պլանների մասին՝ ընդդեմ մյուս արաբական երկրների և առաջին հերթին ընդդեմ Իրաքի երիտասարդ ռեսպուբլիկայի։ Իմպերիալիստները փորձում են զինված ինտերվենցիան քողարկել «օրինական կառավարությունների օգնելու» մասին կեղծ և լկտի բառերով։ Բայց դա միայն ուժեղացնում է բոլոր այն խաղաղասեր ժողովուրդների զայրույթը, որոնք վճռականորեն պահանջում են անգլո-ամերիկյան զորքերը անհապաղ դուրս բերել Լիբանանից և Հորդանանից։ «Ձեռքներդ հեռու Լիբանանից», «Ձեռքներդ հեռու Հորդանանից», «Ձեռքներդ հեռու արաբական



ժողովուրդներից»,— ավելի ուժգին է հնչում միլիոնավորների ձայնը։ Լիբանանի պառլամենտի նախագահ Օսեյրանը ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարին ուղղած իր ուղերձում հայտարարեց, որ ամերիկյան զինված ուժերի ափ հանումը խաղաղության և անվտանգության համար սպառնալիք է ստեղծում Մերձավոր և Միջին Արևելքում։ «Ես գտնում եմ,— գրում է Օսեյրանը,— որ Ամերիկայի Միացյալ Նահանգները պատասխանատվություն են կրում այն որևէ կատաստրոֆիկ հետևանքի համար, որը կարող է հասցնել նույնիսկ համաշխարհային պատերազմի։ Ծվ ես պահանջում եմ անհապաղ էվակուացնել օտարերկրյա զինված ուժերը»։

Ոչ մեկի համար գաղտնիք չեն այն իսկական պատճառները, որոնք շարժման մեջ դրեցին ԱՄՆ-ի և Անգլիայի ռազմական մեքենաները։ Ամերիկյան և անգլիական իմպերիալիստներին վտանգավոր ավանտյուրայի հրեցին իրենց իսկ գաղութարարական ձգտումները, արաբական էժան նավթը։ Մերձավոր և Միջին Արևելքում կենտրոնացված է կապիտալիստական աշխարհի նավթի բոլոր հետազոտված պաշարների 70 տոկոսը։ Անցյալ տարի այստեղ արդյունահանվել է մոտ 200 միլիոն տոննա նավթ։ Միջին Արևելքում

նավթ արդյունահանող երկրների մեջ չորրորդ տեղը գրավում է Իրաքը։ Բնորոշ է, որ Իրաքի նավթը եվրոպական շուկաներում վաճառվում է այնպիսի գնով, որը 16—17 անգամ գերազանցում է իր ինքնարժեքը։ Նավթային մոնոպոլիաներով է պատված նաև Լիբանանը։ Լիբանանում դեպի Միջերկրական ծով են դուրս գալիս երկու նավթամուղներ՝ մեկը Իրաքից, իսկ մյուսը՝ Սաուդական Արաբիայից։

Մերձավոր և Միջին Արևելքի բոլոր նավթային հարստությունները զավթված են յոթ գիգանտ մոնոպոլիաների կողմից, որոնցից հինգը ամերիկյան են։ Ամերիկյան մամուլում դեռևս այս տարվա սկզբին հրապարակվեց «Ռոկֆելլերի ֆոնդի հետազոտական խմբի» զեկուցումը, որը վտանգավոր հանձնարարություններ է պարունակում ԱՄՆ-ում ռազմական պսիխոզի հրահրման և արաբական նավթը իրենց ձեռքում պահելու մասին։ Մասնավորապես, «զեկուցումը» հանձնարարում է «փոքր» պատերազմներ մղել և անհրաժեշտ է գտնում, որպեսզի ԱՄՆ-ը «Միավորումներ ստեղծի, որոնք կարողանային արագորեն միջամտել և զգացնել տալ իրենց հզորությունը, ընտրելով որոշակի և տարբեր օբյեկտներ»։ Այդպիսի օբյեկտներ արդեն դար-



ձան Լիբանանը և Հորդանանը։ Պրովոկացիոն պլաններ են մշակվում Իրաքի նկատմամբ։ ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող շըրջանները իրենց արտաքին քաղաքականության մեջ ղեկավարվում են ոչ թե իրենց ժողովուրդների շահերով, այլ մոնոպոլիաների եսասիրական, զավթողական շահերով։

Մերկացնելով ինտերվենտների լկտիությունն ու երեսպաշտությունը, որոնք փորձում են արդարացնել իրենց զորքերի Լիբանան մտցնելը, Սովետական կառավարությունը 1958 թվականի հուլիսի 16-ի հայտարարության մեջ նշեց, որ «Լիբանանում ԱՄՆ-ի զինված ինտերվենցիայի իսկական պատճառը՝ ԱՄՆ-ի և մյուս արևմտյան տերությունների նավթային մոնոպոլիաների ձգտումն է՝ Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում պահպանելու իրենց գաղութային տիրապետությունը, ինչպես նաև Արաբական Արևելքում նրանց քաղաքականության ակներև սնանկացումն է, Բաղդադի Պակտի և տխրահռչակ Դալես-Էյզենհաուերի դոկտրինայի կործանումը»։ Ինչպես հայտնի է, Դալես-Էյզենհաուերի դոկտրինայի իմաստը այն է, որ ամերիկյան իմպերիալիստները Մերձավոր և Միջին Արևելքի թույլ զարգացած երկրներին օգնելու անվան տակ փոր-

ձում են իրենց ձեռքը գցել այդ երկրների հարստությունները, խեղդել կեղեքված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը։

Հաշվի չնստելով արաբական պետությունների սուվերենիտետի հետ, ամերիկյան զինվորականությունը իր ուժերը կուտակում է մերձավոր-արևելյան երկրների տարբեր մասերում։ Վերջին ժամանակներս ամերիկյան և անգլիական զորքեր են մտցվել Օման, Կուվեյտ, Լահեջի իշխանություն, Լիբիա։ Թուրքական օդանավակայաններն ամերիկացիների կողմից օգտագործվում են լրացուցիչ զորքեր տեղափոխելու համար։ ԱՄՆ-ի իմպերիալիստական տերերի ցուցումի համաձայն Թուրքական զորքեր են կենտրոնացվում Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի Սիրիական շրջանի սահմաններում։ ԱՄՆ-ի ավիացիան լկտիաբար խախտում է մի շարք պետությունների, հատկապես ՄԱՌ-ի օդային սահմանները։

Հուլիսի 28-ից 29-ը Լոնդոնում ԱՄՆ-ի պետական քարտուղար Դալեսի մասնակցությամբ տեղի ունեցավ այսպես կոչված Բաղդադի պակտի սեսիան։ Որպեսզի մի կերպ փրկվի այդ սնանկացած ագրեսիվ պակտը, ԱՄՆ-ը շտապեց հայտարարել, որ



ինքը լիովին պաշտպանում է այդ պակտը, և ստանձնեց բոլոր այն պարտավորությունները, որոնք բխում են դրանից։ Այսպիսով, նեղելով Անգլիային, որը հույս ուներ Բաղդադի պակտի օգնությամբ բարելավել իր գաղութային գործերը, ղեկավարությունն իրենց ձեռքը գցեցին ամերիկացիները։

Փորձելով թյուրիմացության մեջ գցել ժողովուրդներին, ինտերվենտները արդեն հանցագործությունը կատարելուց հետո, հետին թվով ՄԱԿ-ին տեղեկացրին միակողմանի գործողությունների մասին, որպիսի իրավունք նրանք, որպես ՄԱԿ-ի անդամներ, չունեին։

Գործելով ՄԱԿ-ը շրջանցելու ոգով, իմպերիալիստները հույս ունեին, որ իրենք կկարողանան իրենց գաղութային նպատակներին հասնել արագորեն և առանց լուրջ բարդությունների։ Բայց նրանց հաշիվները ձախողվեցին։ Ի պաշտպանություն փոքր ժողովուրդների, որոնց հողը տրորում են ամերիկյան և անգլիական ինտերվենտները, ոտքի կանգնեցին տարբեր երկրների ու ազգերի, տարբեր քաղաքական համոզմունքների տեր մարդիկ։ Նրանք վճռականապես դատապարտեցին զինված ինտերվենցիան և պահանջեցին անհապաղ դուրս բերել ամերիկյան և

անգլիական զորքերը Լիբանանից և Հորդանանից։

Սովետական կառավարության կոչը հնչեց որպես հզոր ահազանգ։ Հաշվի առնելով դրության ամբողջ վտանգավորությունը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերին, Անգլիայի պրեմիեր-մինիստր Մակմիլանին, Ֆրանսիայի մինիստրների խորհրդի նախագահ դը Գոլին և Հնդկաստանի պրեմիեր-մինիստր Ներուին հասցեագրած ուղերձներում առաջարկեց անհապաղ հրավիրել ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և Հնդկաստանի կառավարությունների խորհրդակցություն՝ ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարի մասնակցությամբ։ Բարձր մակարդակի այդպիսի խորհրդակցությունը կարող էր առանց ուշացնելու հանձնարարականներ մշակել սկսվող ռազմական կոնֆլիկտը կանխելու համար։ Սովետական կառավարությունը առաջարկեց հավաքվել «ցանկացած օրին և ժամին, և որքան շուտ, այնքան լավ»։ Ուղերձներում նշվում էր, որ կառավարությունների ղեկավարների խորհրդակցությունում մշակված հանձնարարականները պետք է քննարկվեն Անվտանգության Խորհրդում,



արաբական երկրների ներկայացուցիչների մասնակցությամբ։

Սովետական կառավարության խաղաղ նախաձեռնությունը ամենուրեք հավանություն գտավ։ Հնդկաստանի պրեմիեր-մինիստրը Ներուն համաձայնվեց սովետական առաջարկության հետ և իր պատրաստակամությունը հայտնեց հանդիպման հաջողությանը աջակցելու մասին։ Անգլիական լեյբորիստական պարտիայի պարագլուխ Գեյտսկելը հայտարարեց. «Այդ հնարավորությունն, իհարկե, չպետք է ձեռքից բաց թողնել։ Ահա, վերջապես, մի հնարավորություն դեպի պատերազմ շարժումը կանգնեցնելու և Միջին Արևելքում կարգավորման սկիզբը դնելու համար»։

Սովետական Միության դիրքը առանձնապես մեծ խանդավառություն առաջացրեց Արաբական Արևելքի երկրներում։ Դամասկոսում հզոր ցույց տեղի ունեցավ։ Բանվորները, արհեստավորները, առևտրականները տրանսպարանտներ էին տանում այսպիսի մակագրություններով. «Կեցցե Իրաքի Ռեսպուբլիկան», «Կորչի հանցագործ իմպերիալիզմը», «Կեցցե Սովետական Միությունը— արաբների բարեկամը, խաղաղության ամրոցը»։ Կահիրեի «Ալ-Ախբար» թերթը գրում

էր. «ժողովուրդները, անկախ այն բանից, Արևմուտքում են նրանք ապրում թե Արևելքում, միահամուռ պաշտպանում են բարձր մակարդակի վրա խորհրդակցություն գումարելու առաջարկությունը»։

Միացյալ Նահանգների և Անգլիայի ղեկավար գործիչները հասարակական կարծիքի ճնշման տակ չէին կարող խուսափել պատասխանից։ Չցանկանալով այդ խորհրդակցությունը, նրանք սկսեցին ամեն տեսակի «պրոցեդուրային» հարցեր առաջադրել, առաջարկելով խորհրդակցություն հրավիրել ՄԱԿ-ի շրջանակներում և այլն։ Սկսվեց ձգձգումների տակտիկան։ ԱՄՆ-ի պետական քարտուղար Դալեսը արտահայտվեց հինգ տերությունների կառավարությունների ղեկավարների խորհրդակցության դեմ։

Պատերազմի վտանգավոր օջախի լիկվիդացման նպատակով ցանկանալով օգտագործել յուրաքանչյուր րոպեն, Սովետական կառավարությունը պատասխանեց էյզենհաուերին՝ իր պատրաստակամությունը հայտնելով մասնակցելու կառավարությունների ղեկավարների խորհրդակցությանը Անվտանգության Խորհրդի շրջանակներում։

Սովետական կառավարության այդ համաձայնությունը հանկարծակիի բերեց Վաշինգ-



տոնի և Լոնդոնի քաղաքագետներին։ Մասնավորապես, էյզենհաուերն առաջարկեց, որպեսզի այդ կարևորագույն հարցը լուծվի Անվտանգության Խորհրդի սովորական սեսիայում՝ իր ամբողջ «պրոցեդուրայով» և ԱՄՆ-ին հնազանդ «քվեարկության մեքենայով»։ Դա ոչ այլ ինչ է, եթե ոչ պատասխանատվությունից խուսափելու մի փորձ՝ իր ավազակային գործերի համար։

Խաղաղության պահպանման, Մերձավոր և Միջին Արևելքում անգլո-ամերիկյան ագրեսիան դադարեցնելու համար մղվող պայքարում հանդես են գալիս սոցիալիստական լագերի ժողովուրդները։ Պեկինից մինչև Մոսկվա, Փխենյանից մինչև Բեռլին հարյուր միլիոնավոր մարդիկ դատապարտեցին ագրեսիան և պահանջեցին ինտերվենտների հեռացում Արաբական Արևելքի երկրներից։ Իմպերիալիստները կանգնեցին իրենց ագրեսիվ քաղաքականության դեմ ուղղված հզոր բողոքի փաստի առջև։ Այդ բողոքն ընդգրկեց բոլոր երկրները, լայնորեն ծավալվելով նույնիսկ ԱՄՆ-ում և Անգլիայում։

Պատերազմի ամերիկյան և անգլիական հրձիգները լիակատար պատասխանատվություն կկրեն իրենց չարագործությունների համար։

---

# ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԻ ՄՈՏ

Մ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

ՀԿՊ Ստեփանավանի շրջկոմի
ագիտացիայի և պրոպագանդայի
բաժնի վարիչ

*Ստեփանավանի շրջանի անասնապահները ամառային արոտի շրջանում ջանք չեն խնայում անասունների մթերատվությունը բարձրացնելու և սոցիալիստական մրցությունից հաղթանակով դուրս գալու համար։ Այս տարվա վեց ամսում կաթի արտադրությունն անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 574 տոննայով, 6 ամսում ամեն մի կովից ստացվել է 1.056 կգ. կաթ։ Այս տարվա 5 ամսում մսի հանձնման տարեկան պլանը կատարված է 60 տոկոսով, իսկ կիսամյակինը՝ 123 տոկոսով։ Անցյալ տարվա համեմատությամբ կոլտնտեսությունները ոչխարների գարնան խուզից 6 տոննայով ավել բուրդ են ստացել։ Յուրաքանչյուր ոչխարից արդեն ստացվել է 2 կգ. բուրդ և այլն։*



*Այս օրերին յայլաղներում քիչ աշխատանք չեն կատարում նաև ագիտատորները։ Նրանք սիստեմատիկաբար, անասնապահ կոլտնտեսականների համար քաղաքական և գիտական թեմաներով զրույցներ ու զեկուցումներ են կազմակերպում և ագիտացիոն աշխատանքով օգնում նրանց՝ ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու համար։ Այժմ անասնապահների շրջանում ագիտացիոն-մասսայական աշխատանք են տանում թվով 55 ագիտատոր, որոնց մեծ մասը գյուղատնտեսական մասնագետներ են։ Ագիտատորները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, ակումբագրադարանային աշխատողների հետ միասին անասնապահական ֆերմաներում ստեղծել են կարմիր անկյուններ և դրանք պահանջված ձևով կահավորել։*

*Յայլաղներում ստեղծված կարմիր անկյուններում ցուցադրվում են շրջանի և տվյալ կոլտնտեսության սոցմրցությամբ*

ստանձնած պարտավորությունները, պարզաբանվում է առաջավորների փորձը, այնտեղ կան նաև լոզունգներ։ Գյուլագարակի կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի յայլաղներում կարմիր անկյան համար հատկացված է առանձին սենյակ, ուր ցուցադրված են ընթացիկ տարում անասնաբուծական մթերքների արտադրության բնագավառում շրջանի և հենց կոլտնտեսության վերցրած պարտավորությունները՝ անասնաբուծական մթերքների արտադրության բնագավառում 1958 թվականին առաջնություն շահելու մասին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՀԿՊ Կենտկոմի կողմից սահմանված պայմանները։ Այստեղ գեղարվեստորեն ձևավորված լոզունգները անասնապահներին կոչ են անում ավելացնել կաթի, մսի արտադրությունը, վերացնել կովերի ստերջությունը։ Կարմիր անկյունում կա ցուցանիշների տախտակ, որտեղ ամեն օր տեղեկություն է տրվում յուրաքանչյուր կթվորի ամենօրյա առաջադրանքների կատարման ընթացքի մասին։ Պարտիական կազմակերպությունը, ագիտատորների օգնությամբ շաբաթական մեկ անգամ լույս է ընծայում ագիտացիոն թերթիկ։ Այդ թերթիկի միջոցով կոլտըն-



տեսականներին է հասցվում հետաքրքիր նորություններ, քննադատվում են թերությունները և մասսայականացվում լավ աշխատանքը։ Օրվա թերթերը և ամսագրերը, կոլտնտեսականները ստանում են։ Այդպիսի անկյուններ են կազմակերպված Լեջանի, Վարդաբլուրի, Հոբարձիի, Պուշկինոյի և մյուս կոլտնտեսությունների յայլաղներում։

Յայլաղում խրախուսելի աշխատանք է կատարում Հոբարձի գյուղի կոլտնտեսության ֆերմայի ագիտատոր Ժ. Սոֆյանը։ Նա իր հերթական զրույցների համար հետաքրքիր թեմաներ ընտրելուց բացի գոհացուցիչ պատասխան է տալիս անասնապահներին հուզող հարցերին։ Ունկնդիրների հետ ունեցած նրա զրույցները միշտ հետաքրքիր են լինում ու բովանդակալից։ Բացի այդ, նա իր խելացի խորհուրդներով օգնում է անասնապահներին անասունների խնամքը բարելավելու և կովերի կաթնատվությունը բարձրացնելու գործում։ Վերջերս կոլտնտեսությունում չէր կատարվում կաթի ստացման օրական պլանը։ Այդ իմանալով ագիտատոր Սոֆյանը հատուկ զրույց կազմակերպեց «Ինչպես կատարել կաթի արտադրության երկու ամսվա առաջադրանքը» թեմայով։

— Ընթացիկ տնտեսական տարում,— ասաց ագիտատորը,— մենք պարտավորվել ենք յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ստանալ 266 ցենտներ կաթ, կամ ամեն մի կովից՝ 2.142 կիլոգրամ կաթ։ Մինչև հունիսի մեկը յուրաքանչյուր կովից ստացվեց 1.115 կիլոգրամ կաթ։ Անասնապահների աշխատանքի համար ըստեղծված են լավագույն պայմաններ, արոտավայրերը հարուստ են խոտով և առատ ջրով։Ագիտատորը, առաջավոր կթվորուհիներ Ա. Լալազարյանի, Ն. Դավոյանի օրինակով ունկնդիրներին պարզաբանում է, թե ինչպես պետք է կազմակերպել կիթը, որպեսզի կովերն ավելի շատ կաթ տան։ Նա հանգամանորեն խոսում է նաև կովերի գիշերային արոտի և նրանց հանգստի մասին։

Անասնապահների հետ պարբերաբար հետաքրքիր և բովանդակալից զրույց են ունենում նաև ագիտատորներ Հ. Միկոյանը (Վարդաբլուր), Ե. Նալբանդյանը (Կուռթան), Ա. Ամիրովը (Յաղդան), Գ. Մաղաքյանը (Գյուլագարակ) և շատերը։

Պարտիայի շրջանային կոմիտեի զեկուցողների խմբակի և քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման շրջանային բաժանմունքի անդամները հաճախակի յայ-



լաղներում անասնապահների առջև հանդես են գալիս զեկուցումներով ու դասախոսություններով։

Անցած ամսում յայլաղներում կարդացվել է ավելի քան 28 զեկուցում։ Օրինակ, «Միջազգային դրության մասին» թեմայով դասախոսություն է կարդացվել Կուռթանի, Հոբարձիի և Լեջանի կոլտնտեսությունների յայլաղներում, անասնապահների խնդիրների մասին՝ Ագարակի, Կաթնաղբյուրի, Սվերդլովի կոլտնտեսությունների արոտավայրերում, իսկ «ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան (1958 թ.) պլենումի որոշումները» թեմայի մասին՝ Ստեփանավանի Ստալինի անվան կոլտնտեսությունում և այլն։

Պարտիական կազմակերպությունները լուրջ ուշադրություն են դարձնում առաջավոր անասնապահների փորձի պրոպագանդայի վրա։ Այդ կապակցությամբ տեղի են ունենում ագիտատորների սեմինար պարապմունքներ, ուր բացի առանձին զրույցներ քննարկելուց, ագիտատորներին հանձնարարություն է տրվում առաջավոր փորձը մասսայականացնելու վերաբերյալ։

Առաջավոր փորձի տարածման համար լայնորեն օգտագործվում են նաև կոլտնտեսային արտադրական խորհրդակցություն-





ները, որտեղ հանրագումարի են բերվում տվյալ ամսվա արդյունքները, քննադատվում աշխատանքի թերությունները և այդ խորհրդակցություններում ելույթ ունենալով անասնաբուծության առաջավորները պատմում են իրենց փորձի մասին, օգնում են ետ մնացող անասնապահներին՝ առաջավորներին հասնելու։

Անասնապահության բնագավառում կատարվող լավ աշխատանքը խրախուսելու նպատակով սահմանված է պարտիայի շրջանային կոմիտեի և շրջանային Սովետի գործկոմի միջկոլտնտեսային փոխանցիկ դրոշ, որը կոլտնտեսություններին է տրվում ամենամսյա կաթի արտադրության բարձր ցուցանիշների համար։

Բացի այդ, կոլտնտեսությունների վարչությունները առաջավոր անասնապահների համար սահմանել են դրամական պարգևներ, որը տրվում է սոցմրցության յուրաքանչյուր ամսվա արդյունքները ամփոփելուց հետո։

Զգալի աշխատանք է կատարվում անասնապահ կոլտնտեսականների կուլտուր-կենցաղային սպասարկման ուղղությամբ։

---



# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԲԱՄԲԱԿ ԵՐԿՐԻՆ

Ք. ՄԿՐՏՉՅԱՆ
(Գյուղատնտես)

Մեր ռեսպուբլիկայի բամբակագործները ջանք չեն խնայում պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները։ Նրանք նույնիսկ անցյալ տարվա կլիմայական անբարենպաստ պայմաններում ավելի պակաս տարածությունից պետությանը հանձնեցին նույնքան հումք, որքան հավաքել էին նախորդ տարում։ 1956 թվականի համեմատությամբ անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից 1,4 ցենտներով բարձր բերք ստացվեց։ Անցյալ տարի Էջմիածնի շրջանի կոլտնտեսությունները բամբակի հանձնման պետական պլանը կատարելով 100,4 տոկոսով, 4.333 հեկտար տարածության ամեն մի հեկտարից ստացան 22,8 ցենտներ բերք, իսկ Արտաշատի շրջանում ամեն մի հեկտարից ստացվեց 23 ցենտներ բերք։

Ավելի մեծ հաջողությունների հասան առանձին կոլտնտեսություններ։ Օրինակ, Էջմիածնի շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունը 630 հեկտար ցանքերի ամեն մի հեկտարից հավաքեց և պետությանը հանձնեց 26,8 ցենտներ բերք, մթերման պլանը կատարելով 110 տոկոսով։ Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի Շահումյանի անվան կոլտնտեսությունը ամեն մի հեկտարից ստացավ 33 ցենտներ բերք, իսկ Աթարբեկյանի անվան կոլտնտեսությունը՝ 36 ցենտներ։ Սակայն բամբակի արտադրության ներկա մակարդակը չի բավարարում երկրի պահանջը։

Այս տարի փետրվարին Մոսկվայում կայացած բամբակագործների խորհրդակցության ընդունած պարտավորությունների մեջ ասված է, որ՝ «կապիտալիստական երկրների հետ խաղաղ մրցության մեջ մենք գլխավոր խնդիր ենք համարում առաջիկա 12—15 տարվա ընթացքում ավելացնել բամբակի արտադրությունը ոչ պակաս քան երկու անգամ և բամբակի համախառն արտադրանքը հասցնել 9—10 միլիոն տոննայի, որը թույլ կտա լիովին ապահովել երկրի պահանջը բամբակի հումքով, ունենալ պետական անհրաժեշտ պաշարներ և ավելացնել նրա արտահանումը»։



Միաժամանակ բամբակագործների Համամիութենական խորհրդակցությունը նշեց, որ բամբակի արտադրության ավելացման գլխավոր միջոցը դա բամբակի բերքատվության բարձրացումն է բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում։

Բամբակենու բերքատվությունը բարձրացնելու և ստանձնած պարտավորությունները կատարելու, գերակատարելու համար մեր կոլտնտեսությունները ունեն բոլոր հնարավորությունները։ ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումը կոլտնտեսային կարգերի հետագա զարգացման և ՄՏԿ-ները վերակազմելու մասին որոշումը լայն հնարավորություններ ստեղծեց բամբակացան կոլտնտեսությունների համար ժամանակակից տեխնիկան ավելի արտադրողաբար օգտագործելու համար։

Սեփական տեխնիկան առավել արդյունավետ են օգտագործում Էջմիածնի շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունը, Արտաշատի շրջանի Շահումյանի, Աթարբեկյանի և Կամոյի անվան կոլտնտեսությունները, Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլտնտեսությունը, Վեդու շրջանի Արարատ և Ենգիջա գյուղերի և շատ ուրիշ կոլտնտեսություններ։

Առաջավոր այս կոլտնտեսությունները ճիշտ

օգտագործելով տեխնիկան, բամբակի ցանքի և մշակության աշխատանքները կատարեցին լավագույն ագրոտեխնիկական ժամկետներում և բարձր որակական ցուցանիշներով։ Նրանք ավարտել են նաև բամբակենու ցանքերի չորրորդ և երկրորդ սնուցման աշխատանքները։

Այժմ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները թևակոխում են բամբակենու մշակության ավելի պատասխանատու շրջան։ Սկսվել է պայքարը բամբակենու վնասատուների դեմ, որոնք պտղակալման շրջանում ահավոր վնաս են հասցնում բույսերին։

Բամբակի պլանտացիաները ճիշտ ժամանակին ջրելը և խոր փխրեցումներ կատարելը խիստ անհրաժեշտ է, որովհետև այս ամսում բարձր ջերմաստիճանի հետևանքով հողի մակերեսից հսկայական քանակությամբ ջուր է գոլորշիանում և հողը շատ շուտ չորանում է։ Բացի այդ, բույսերը նույնպես մեծ քանակությամբ ջուր են գոլորշիացնում։ Ուժեղ գոլորշիացման հետևանքով հողում առաջանում է ջրի պակասություն, դրա հետևանքով բույսերը չեն կարողանում օգտվել պարարտանյութերից, նվազում է միկրոօրգանիզմների գործունեությունը, հետևապես բույսերի վիճակը վատանում է, նրանք



հյուծվում են և ի վիճակի չեն լինում իրենց վրա պահելու մեծ թվով ծաղիկներ և կնգուղներ։

Բամբակենու ժամանակին տրված սնուցումը, ջուրը և խոր փխրեցումները ոչ միայն կանխում են պտղաէլեմենտների թափվելը, այլև բազմապատկում են յուրաքանչյուր բույսի վրա կազմավորող կնգուղների թիվը։

Որպեսզի պտղավիժման, պտղաթափման երևույթները կանխվեն և ապահովվի բարձր բերք, անհրաժեշտ է բամբակի ջրման և փխրեցման աշխատանքները կատարել իրար հետ զուգակցված, այլապես հողում մտցված պարարտանյութերը բույսերի կողմից լրիվ չեն օգտագործվի։

Բամբակենու հասունացումն արագացնող և պտղավիժումն ու պտղաթափումը նվազեցնող մյուս կարևոր միջոցառումներից է բույսերի ծերատումը։

Սովորական եղանակով կատարվող ծերատումը պետք է կատարել այն ժամանակ, երբ բույսերի վրա առաջացել են 12—14 բերքատու ճյուղեր։

Եթե հիմնական ծերատումից հետո բույսերը փարթամ աճել են և նրանց վրա առաջացել են նոր վեգետատիվ օրգաններ, ապա այդպիսի դաշտերում կատարել խոր ծերա-

տում, երբ բույսերի վրա սկսել են ճեղքվել առաջին երկու կնգուղները։ Խոր ծերատման ժամանակ հեռացնել ցողունի և ոչ բերքատու ճյուղերի ծայրերը։

Առատ բերք ստանալու համար անհրաժեշտ է կուտակված բերքը պաշտպանել վնասատուներից։ Այդ վնասատուներից ամենավտանգավորը և տարածվածը դա ոստայնատիզն է։

Շոգ եղանակների պատճառով ոստայնատիզի զարգացումը կարող է կատարվել շատ արագ և հասնել վտանգավոր չափերի։ Բերքը կորստից ազատելու նպատակով պետք է առաջիկա տաս օրվա ընթացքում ավարտել դաշտերի երկրորդ սրսկումը։

Ժամանակին տրվող ջուրը, խոր փխրեցումները, ծերատումը և պայքարը վնասատուների դեմ կապահովեն բամբակի բարձր բերքատվությունը, որը հնարավորություն կստեղծի բոլոր կոլտնտեսությունների համար կատարելու և գերակատարելու ստանձնած պարտավորությունները։

---

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

---

# ՄԵՐ ԵՐԿՐԻ ՊԱՆԾԱԼԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

## Ց. ՄԱՐՈՒԹՅԱՆ

Համամիութենական արդյունաբերական ցուցահանդեսը մեծ ժողովրդականություն է վայելում։ Ամեն օր հազարավոր այցելուներ հիացմունքով են դիտում սոցիալիստական արդյունաբերության պանծալի նվաճումները։ Միայն անցյալ տարի ցուցահանդես են այցելել 6,5 միլիոն մարդ, այդ թվում 70 հազար մարդ արտասահմանյան երկրներից։

Հարուստ ու բազմաբովանդակ է Համամիութենական արդյունաբերական ցուցահանդեսը։ Նա այս տարի ունի 21 տաղավար, ուր ցուցադրված են 60 հազար տարբեր տեսակի էքսպոնատներ։

Ցուցահանդեսին իրենց էքսպոնատներով մասնակցում են երկրի 1.500 արդյունաբերական ձեռնարկություն և 250 գիտահետազոտական կազմակերպություն։

Ցուցահանդեսում այցելուները կարող են դիտել 600 տեխնոլոգիական պրոցես։ Այստեղ բազմաթիվ մեքենաների և հաստոցների կեսից ավելին առաջին անգամ են ցուցադրվում, որոնք ստեղծվել են մեր երկրի ձեռնարկություններում՝ վերջին տարիների ընթացքում։

Այս տարի մեծ հետաքրքրություն է ներկայացնում «Գիտություն» տաղավարը, ուր ցուցադրված են սովետական արհեստական երեք արբանյակները՝ իրենց իսկական մեծությամբ և լրիվ սարքավորումներով։ Այս արբանյակները ամեն օր ժամերով դիտում են ոչ միայն մեր երկրի տարբեր ծայրերից եկած տասնյակ հազարավոր այցելուներ, այլև արտասահմանից ժամանած բազմաթիվ հյուրեր։

Ինչպես հայտնի է սովետական արհեստական առաջին արբանյակը, որը բաց թողնվեց 1957 թվականի հոկտեմբերի 4-ին, ուներ ընդամենը 83,6 կիլոգրամ, երկրորդ արբանյակը՝ 508,3 կիլոգրամ, իսկ երրորդը՝ 1.327 կիլոգրամ քաշ։

«Գիտություն» տաղավարում լայնորեն ցուցադրվում է հրթիռային տեխնիկան։ Ուշադրության կենտրոնում է գտնվում «Ատոմային էներգիան խաղաղ նպատակներով» բաժինը։



Այստեղ ցուցադրված են նոր հաշվիչ մեքենաներ, ապարատներ, որոնք ատոմային էներգիան օգտագործում են արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ, ինչպես նաև բժշկական գիտության և մյուս բնագավառներում։ Այստեղ այցելուները հետաքրքրությամբ դիտում են «Լենին» ատոմային սառցահատի և ռեակտիվ օդանավերի մակետները։

«Գիտություն» տաղավարում այցելուները հանգամանորեն ծանոթանում են հետազոտական և էքսպերիմենտալ այն աշխատանքներին, որոնք կատարվում են մեր երկրում գիտության տարբեր բնագավառներում։

Ահա մեքենաշինության տաղավարը, ուր ցուցադրված մեքենաների զգալի մասը ստեղծված է վերջին մի քանի տարում։ Միայն անցյալ տարի երկրի մեքենաշինական ու նախագծային կազմակերպությունները ստեղծել են 1.500-ից ավելի նոր տիպի կարևոր մեքենաներ, որոնցից 850-ը արդեն յուրացված են և մասսայաբար արտադրվում են մեր ձեռնարկություններում։ Այս տաղավարում և շրջակայքում ցուցադրվում են Մինսկի գործարանի 40 տոննա տարողությամբ հսկայական ինքնաթափեր, մետաղահատ հաստոցներ և այլն։

«Պոբեդա», «Մոսկվիչ», «Վոլգա» ավտոմեքենաների կողքին ցուցադրված են նաև Գորկու ավտոմոբիլային գործարանի նոր տիպի ավտոմեքենաները՝ «ԶԻԼ—111», «Չայկա» և շատ այլ նորագույն տեսակի ավտոմեքենաներ, որոնք առանձին ուշադրության են արժանանում։

Մեքենաշինության տաղավարը աչքի է ընկնում ռադիոտեխնիկայի հետաքրքիր նորություններով։ Գրավիչ են նոր տիպի ռադիոընդունիչները և հեռուստացույցները։

Այս տարի ցուցահանդեսում կա նաև «Քիմիական արդյունաբերություն» տաղավար, որը ցույց է տալիս, թե ինչպես պարտիայի Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշման կենսագործումով մեր երկիրը նոր վիթխարի հաջողություններ ձեռք կբերի քիմիական արդյունաբերության զարգացման բնագավառում։ Այդ տաղավարը պատմում է այն մասին, որ քիմիան լայնորեն ներդրվում է ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում և ժողովրդի համար ստեղծում է նոր բարիքներ։

ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումը նախագծեց մեր երկրի քիմիական արդյունաբերության նոր և հուժկու զարգացումը։ 1958—1965 թվականների ընթացքում սովե-



տական քիմիական արդյունաբերության զարգացման համար նախատեսվում է ներդնել 100 միլիարդ ռուբլի։

Զափազանց մեծ հետաքրքրություն է ներկայացնում քիմիային նվիրված տաղավարը։ Այստեղ ցուցադրված են պլաստմասսայից կառուցված բնակարաններ ու նրանց կահավորումները, արհեստական բազմաթիվ գործվածքներ։

Տաղավարում ցուցադրված է նիտրոնի թելերից գործված կտոր և նույն կտորից պատրաստված տղամարդու զգեստ։ Ինչպես հայտնի է նիտրոնի թելն ստացվում է գազից։ Այդ զգեստն իր որակով չի զիջում բրդյա զգեստին։

«Քիմիական արդյունաբերություն» տաղավարում ցույց են տրված նրա հումքի անսպառ աղբյուրները, որով հարուստ է մեր երկիրը։

Այս տարի ցուցահանդեսում ստեղծված են «Երկրաբանություն», «Նավթ», «Գազ» տաղավարներ։ Նշված տաղավարներում ցուցադրված էքսպոնատները լայն կերպով պարզաբանում են, թե ինչպես մեր երկրում տարեցտարի ավելանում է նավթի և բնական գազի հանույթը։

Լայն ուշադրության են արժանի Համամիութենական արդյունաբերական ցուցահանդեսի

*թեթև և սննդի արդյունաբերությանը նվիրված տաղավարները։ Ծանր արդյունաբերության զարգացման հիման վրա տարեցտարի ընդարձակվում է թեթև և սննդի արդյունաբերությունը։ Զորս ընդարձակ տաղվարներում ցուցադրվում են թեթև և տեքստիլ արդյունաբերության արտադրանքի նմուշներ։ Այստեղ ներկայացված են բրդյա, բամբակյա, մետաքսյա գործվածքների 1.500 նմուշներ, որոնց կեսը ցուցադրվում է առաջին անգամ։ Բացի այդ ցուցադրվում են նոր հաստոցներ, ավտոմատ շարժիչ մեքենաներ ու նոր տեխնոլոգիական պրոցեսներ, որոնք բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը։*

*Ցուցահանդեսում սոցիալիստական արդյունաբերության մեծ հաջողությունները ցուցադրելուց բացի կատարվում է նաև առաջավոր փորձի լայն փոխանակում։ Մեր երկրի բարիք ստեղծողները իրար հանդիպելով միմյանց հաղորդում են այն նորն ու առաջավորը, ինչ ծնունդ է առնում իրենց մոտ։ Յուրաքանչյուր այցելու Համամիութենական արդյունաբերական ցուցահանդեսից հեռանում է վառ տպավորությամբ՝ տեսնելով սոցիալիզմի երկրի հզոր ինդուստրիայի աննախընթաց զարգացումն ու ծաղկումը։*

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(թվեր և փաստեր)

*Մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը նոր վերելք է ապրում։ Անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ 20-րդ համագումարի և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումների որոշումները, Հայաստանի աշխատավորները նորանոր հաջողություններ են ձեռք բերում ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման բնագավառում։ Ահա մի շարք թվեր և փաստեր, որոնք համառոտակիորեն բնութագրում են այդ հաջողությունները։*

*☆ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը համախառն արտադրանքի 1958 թվականի առաջին կիսամյակի պլանը կատարել է 105 տոկոսով։ 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի արտադրությունը այս տարվա նույն ժամանակաշրջանում ավելացել է 13 տոկոսով։*

*☆ Արդյունաբերական արտադրանքի կարևորա-*

գույն տեսակների արտադրանքի 1958 թվականի առաջին կիսամյակի պլանի կատարումը բնութագրվում է հետևյալ ցուցանիշներով. ռաֆինացված պղինձ՝ 109 տոկոս, էլեկտրաէներգիա՝ 98 տոկոս, մինչև 100 կիլովատ էլեկտրաշարժիչներ՝ 101 տոկոս, ուժային տրանսֆորմատորներ՝ 100,5 տոկոս, մետաղահատ հաստոցներ՝ 105 տոկոս, էլեկտրաշարժիչ սարքեր՝ 103 տոկոս, զարթեցուցիչ ժամացույցներ՝ 100 տոկոս, հանքային պարարտանյութեր՝ 104 տոկոս, ցեմենտ՝ 102 տոկոս, կաշվե կոշիկ՝ 104 տոկոս, բամբակե գործվածք՝ 101 տոկոս, բրդե գործվածք՝ 103 տոկոս, կոնյակ՝ 113 տոկոս, կենդանական յուղ (առանց կոլտնտեսությունների արտադրածի)՝ 100,2 տոկոս, պանիր (առանց կոլտնտեսությունների արտադրածի)՝ 133 տոկոս, միս՝ 103 տոկոս, պահածոներ՝ 102 տոկոս և այլն։

☆ Աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ 1958 թվականի առաջին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 6 տոկոսով, այդ թվում ժողովրդական տնտեսության խորհրդի արդյունաբերության մեջ 7 տոկոսով, տեղական Սովետների արդյունաբերության մեջ՝ 0,5 տոկոսով և ռեսպուբլիկական մինիստրությունների ու գերատեսչությունների արդյունաբերության մեջ՝ 4 տոկոսով։

☆ Այս տարվա առաջին կիսամյակում արտադրության մեջ մեծ ուշադրություն է դարձվել տեխնիկա-



կան պրոգրեսի հարցերին։ Ալյումինի գործարանում բարելավվել է ալյումինի ստացման տեխնոլոգիան։ Էլեկտրատեխնիկական գործարանում արմատավորվել են 4-րդ գաբարիտի միասնական սերիայի էլեկտրաշարժիչների վահանների մշակման 1282 մոդելի 8 իլիկանի և ուղղահայաց-խառատային կիսաավտոմատներ։ Թեթև արդյունաբերության վարչության №1,2 և 3 կոշկի ֆաբրիկաներում լիովին կոնվեյերային սիստեմ է մտցվել կոշկի կարի գործում և այլն։

☆ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը այս տարվա առաջին կիսամյակում յուրացրել է արտադրանքի մի շարք նոր կարևոր տեսակների արտադրություն»։ Սկսվել է «1—Բ 61» խառատապտուտակահան հաստոցների սերիական արտադրությունը, յուրացվել է ացետատ նատրիումի և պոլիվինիլբուտիրոլե թաղանթի թողարկումը, վինիֆլեքսով մեկուսացած փաթեթալարի սերիական արտադրությունը, ինչպես նաև նոր տեսակի գործվածքների, կոշիկի և սննդամթերքների արտադրությունը։

☆ Նշված ժամանակաշրջանում կատարվել են արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման և մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի վրա կատարվող ծախսումների մակարդակի իջեցման առաջադրանքները։ Համեմատական ապրանքային արտադրանքի ինքնարժեքը 1958 թվականի առաջին կիսամյակում, անցյալ տարվա համեմատությամբ, համապատասխան գներով իջեցվեց 2,6 տոկոսով։ Դրա

շնորհիվ ամբողջ ապրանքային արտադրանքի գծով ծախսումների արտապլանային խնայողություն է ըստացվել 22 միլիոն ռուբլի, այդ թվում ժողտնտխորհի գծով՝ 18 միլիոն ռուբլի։

☆ 1958 թվականի առաջին կիսամյակից կոլտնտեսությունները սկսեցին աշխատել նոր ձևով։ Ինչպես հայտնի է, ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիան որոշում ընդունեց կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏԿ-ները վերակազմելու մասին։ Այդ որոշումը պատմական դեր խաղաց մեր երկրի գյուղատնտեսության հետագա վերելքն ապահովելու գործում։ Արդեն այժմ առկա են լուրջ հաջողությունները, որոնք խոսում են պարտիայի և կառավարության անցկացրած միջոցառումների խոշոր արդյունավետության մասին։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները գարնանացան կուլտուրաների ցանքի պլանն այս տարի կատարեցին 102 տոկոսով։ Հացահատիկային կուլտուրաների ցանքի պլանը կոլտնտեսություններն ու սովխոզները կատարեցին 104 տոկոսով։

☆ 1958 թվականի գարնանը կոլտնտեսությունները գցեցին 60 տոկոսով ավելի խաղողի և 14 տոկոսով ավելի պտղատու այգիներ, քան 1957 թվականի գարնանը։

☆ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած օրենքին համապատասխան, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մոտ 73 տոկոսը մինչև հուլիսի 1-ը արդեն գնել



էր իրենց անհրաժեշտ տեխնիկան։ Կոլտնտեսությունները ձեռք են բերել գյուղատնտեսության արտադրության համար անհրաժեշտ 1879 տրակտոր, 588 հացահատիկային կոմբայն, 1526 գութան, 1224 ցանիչ և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու սարքավորումներ՝ ընդամենը 51 միլիոն ռուբլի գումարի։

☆ 1958 թվականի առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 6 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 7 տոկոսով, խոզերի գլխաքանակը ավելացավ 21 տոկոսով, ոչխարներինը՝ 7 տոկոսով։ Կաթի արտադրությունն ավելացավ 18 տոկոսով, մսինը՝ 58 տոկոսով, բրդինը՝ 7 տոկոսով։ Յուրաքանչյուր ֆուրաժային կովի միջին կաթնատվությունն աճեց 10 տոկոսով։

☆ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավալացման շնորհիվ զգալիորեն ավելացան այդ մըթերքների նաև մթերումներն ու գնումները։ Մսի մըթերումների և գնումների կիսամյա պլանը կատարվեց 113 տոկոսով, պետությանը հանձնվեց և վաճառվեց 53 տոկոսով ավելի միս, քան 1957 թվականի առաջին կիսամյակում։ Կաթի մթերումների և գնումների պլանը կատարվեց 139 տոկոսով, պետությանը կաթ հանձնվեց 20 տոկոսով ավելի, քան 1957 թվականի առաջին կիսամյակում։

☆ 1958 թվականի առաջին կիսամյակում զգալիո-

րեն աճեց ու զարգացավ մեր ռեսպուբլիկայի տրանսպորտը։ Բեռնման ընդհանուր պլանը Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը 1958 թվականի առաջին կիսամյակում կատարեց 103 տոկոսով։ Բեռնատար վագոնի շրջապտույտի միջին ժամանակը նորմայի դիմաց ավելացավ 6 տոկոսով։ Ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը, 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, աճեց 29 տոկոսով։ Ավտոմոբիլային տրանսպորտի ուղևորների փոխադրման պլանը կատարվեց 111 տոկոսով։

☆ 1958 թվականի առաջին կիսամյակի համար սահմանված կապիտալ ներդրումների պետական պլանը ռեսպուբլիկայում ամբողջությամբ կատարվեց 92 տոկոսով, այդ թվում շինարարական-մոնտաժային աշխատանքների պլանը՝ 96 տոկոսով։ Պետական պլանով հատկացված միջոցների հաշվին կատարված կապիտալ ներդրումների ծավալը, 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, 1958 թվականի առաջին կիսամյակում ավելացավ 34 տոկոսով, այդ թվում շինարարական-մոնտաժային աշխատանքներինը՝ 39 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունը 1958 թվականի առաջին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, բարձրացավ 9 տոկոսով։

☆ 1958 թվականի առաջին կիսամյակում լայն թափով աճեց և զարգացավ ապրանքաշրջանառությունը։



Մանրածախ ապրանքաշրջանառության այս տարվա առաջին կիսամյակի պլանը Հայկական ՍՍՌ առևտուր անող կազմակերպությունները կատարեցին 104 տոկոսով։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը, 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, աճեց 10 տոկոսով։

☆ Նշված ժամանակաշրջանում անշեղ աճ ապրեց նաև մեր ժողովրդի կենսամակարդակը։ 1958 թվականի հունվարի 1-ից վերացվեց ամուրիների, միայնակ և սակավանդամ ընտանիք ունեցող քաղաքացիների հարկի գանձումը երեխաներ ունեցող քաղաքացիներից, ինչպես նաև միայնակ կանանցից։ Նույն պահից սկսած պետությանը գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումներից ազատվեցին կոլտնտեսականների, ինչպես նաև բանվորների ու ծառայողների անհատական օժանդակ տնտեսությունները։

☆ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատությունները 1958 թվականին տվեցին 18 տոկոսով ավելի երիտասարդ մասնագետներ, քան 1957 թվականին։

☆ Բնակարանային շինարարության մեջ պետական կապիտալ ներդրումների ծավալը 1958 թվականի առաջին կիսամյակում 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ աճեց 34 տոկոսով։

———

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ՎԻԵՏՆԱՄԻ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## ՎԴՌ-ի հռչակման 13-րդ տարեդարձի առթիվ (թվեր և փաստեր)

*Ռեսպուբլիկայի հաստատումից հետո Վիետնամի ժողովրդական կառավարությունը ձեռնամուխ լինելով երկարատև պատերազմի վերքերը բուժելուն, որոշակի հաջողությունների է հասել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում և կուլտուրական շինարարության մեջ։ Ահա այդ հաջողությունների մասին են խոսում ներքոհիշյալ թվերն ու փաստերը։*

☆ *1956 թվականին վերջնականապես ավարտվեց ագրարային ռեֆորմների իրագործումը ՎԴՌ-ում, հողազուրկ և սակավահող գյուղացիությանը հանձնվեց 895 հազար հեկտար կալվածատիրական հող, բավականաչափ բանող անասուններ և գյուղատնտեսական գործիքներ։ Ագրարային ռեֆորմի շնորհիվ բռնագրավվեց և կալվածատերերից հետ գնվեց 69 հազար 862,5 հեկտար հող, 104 հազար 666 գլուխ անասուն, 1 միլիոն 846 հազար գյուղատնտեսական տարբեր մեքենաներ և գործիքներ և 21 հազար 822 տոննա պարենամթերք։ Այս բոլորը բաժանվեց 7 միլիոն 890*



*հազար 766 հողազուրկ և սակավահող գյուղացիների վրա։*

★ *Ստեղծվել են բարենպաստ պայմաններ Վիետնամի գյուղատնտեսական արտադրության կոոպերացման տարբեր ձևերի լայն զարգացման համար։ Մինչև 1958 թվականի օգոստոսի 1-ը, ռեսպուբլիկայում կազմակերպված է 133 օրինակելի գյուղացիական կոոպերատիվ, 16 սովխոզ և 157 հազար 885 աշխատանքային փոխօգնության խումբ։ Այդ նշանակում է, որ գյուղացիական տնտեսությունների 41 տոկոսը միավորված է այդ խմբերում։ Այդ այն ժամանակ, երբ 1957 թվականի վերջին երկրում հաշվվում էր ընդամենը 40 կոոպերատիվ և մոտավորապես 100 հազար աշխատանքային փոխօգնության խմբեր։*

☆ *Այդ տնտեսությունները նշանակալից օգնություն են ստանում Սովետական Միությունից և մյուս սոցիալիստական երկրներից։ Նրանց ուղարկվում են տրակտորներ և ուրիշ գյուղատնտեսական մթերքներ։*

☆ *Վիետնամի հյուսիսում, ներկայիս ՎԴՌ-ի տերիտորիայի սահմաններում, ֆրանսիական տիրապետության տարիներին արտադրվում էր ընդամենը 2 միլիոն 400 հազար տոննա բրինձ, իսկ 1957 թվականին նույն տերիտորիայի վրա, չնայած երաշտին, հավաքվեց 4 միլիոն տոննայից ավելի բրինձ և 700 հազար տոննա ուրիշ հացահատիկային կուլտուրաներ։ Համեմատելու համար հարկավոր է նշել, որ Հարավային Վիետնամը, որտեղ կան ավելի բարենպաստ կլիմայա-*

կան պայմաններ, անցյալում հավաքում էր մինչև 5 միլիոն տոննա բրինձ, 1957 թվականին հավաքեց ընդամենը 2, 8 միլիոն տոննա հացահատիկ։

☆ ՎԴՌ-ում արագ տեմպերով վերականգնվում են իռիգացիոն կառուցումները։ 1956 թվականի վերջին ոռոգելի տարածությունները արդեն գրավում էին 800 հազար հեկտար տարածություն։ 1956 թվականի վերջին երկրում գտնվող 138 հազար հեկտար խոպան հողերից հերկվել է 115 հազար հեկտար։

☆ Բրնձի միջին բերքատվությունը ռեսպուբլիկայում հասել է հեկտարից 18 ցենտների (36 տոկոսով ավելի նախապատերազմյան 1939 թվականի համեմատությամբ)։ Մեկ շնչին հասնող բրնձի արտադրությունը կազմել է 303 կիլոգրամ։

☆ Աճել է ուրիշ պարենային կուլտուրաների բերքատվությունը։ 1939 թվականի համեմատությամբ բամբակի արտադրությունը աճել է 3 անգամ, ջութինը՝ 1,5 անգամ, գետնանշինը՝ 33,5 անգամ։

☆ 1956 թվականին բանող անասունների գլխաքանակը 1938 թվականի մակարդակը գերազանցեց 58 տոկոսով։

☆ ՎԴՌ-ի տնտեսության մեջ կարևոր տեղ է գրավում ձկնորսությունը։ Ձկնորսների համար կազմակերպված է 950 արտադրական բրիգադներ, որոնք կոլեկտիվ աշխատանքի նախնական ձևն են հանդիսանում։

☆ Արդյունաբերության ամենախոշոր ճյուղը՝ լեռ-



նահանքային արդյունաբերությունն է։ 1956 թվականին ՎԴՌ-ում արդյունահանվել է 1137,3 տոննա ածուխ, 23 հազար տոննա ապատիտ, 32 հազար տոննա ֆոսֆորիտ։ Արտադրված է 94 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

☆ Հյուսիսային Վիետնամում մինչև պատերազմը զարգացած էր մշակող արդյունաբերությունը՝ կային երկաթուղային արհեստանոցներ Հանոյում և Վինում, նավաշինական արհեստանոցներ՝ Հայֆոնում, հեծանիվի գործարան՝ Հանոյում, ցեմենտի գործարան՝ Հայֆոնում (արտադրողականությունը մինչև պատերազմը հավասար էր տարեկան 300 հազար տոննայի պորտլանդ ցեմենտ), կային նաև տեքստիլ գործարաններ, ապակու գործարաններ, ճենապակու ֆաբրիկաներ, քիմիական գործարաններ և այլն։ Պատերազմի տարիներին շատ արդյունաբերական ձեռնարկություններ մասամբ կամ լրիվ հանվեցին շարքից։

☆ Վերջին տարիներին վերականգնված են բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ՝ ածխահանքեր՝ Հոն-Գայում, ցեմենտի և ֆոսֆորի գործարաններ՝ Հայֆոնում, տեքստիլ և մետաքսի ֆաբրիկաներ Նամ-Դինում և այլն։ Կատարելագործված է դիմադրության պատերազմի ժամանակ կառուցված 18 ձեռնարկությունների սարքավորումը։ Կառուցված են նաև 20 նորագույն ձեռնարկություններ, մի քանի էլեկտրակայաններ և այլն։

☆ ՎԴՌ-ում խոշոր ուշադրություն է դարձվում

տնայնագործական արդյունաբերության զարգացումը։ 1956 թվականի վերջին երկրում կար 55 հազար տնայնագործական ձեռնարկություն։

☆ ՎԴՌ-ի տնտեսության վերականգնման և զարգացման գործում մեծ օգնություն են ցույց տալիս Սովետական Միությունը, Չինական ժողովրդական Ռեսպուբլիկան և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրները։ Սովետական կառավարությունը առանձնացրել է 400 միլիոն ռուբլի ՎԴՌ-ի բնակչության կենսամակարդակը բարձրացնելու և տնտեսության վերակառուցման նպատակների համար, այդ թվում 25 արդյունաբերական և կոմունալ ձեռնարկությունների վերականգնման և կառուցման համար։ ՉԺՌ-ն առանձնացրել է 800 միլիոն յուան երկաթուղիների վերանորոգման, գետային նավահանգիստների և խճուղային կամուրջների, գործվածքային ֆաբրիկաների, կաշվի գործարանների կառուցման համար։

☆ Գաղութային Վիետնամում երկրի ազգաբնակչության 95 տոկոսն անգրագետ էր։ Ռեսպուբլիկայի հաստատումից հետո երկրում գրագիտություն է սովորել 11 միլիոնից ավելի մարդ (ՎԴՌ-ի ազգաբնակչությունը կազմում է 13 միլիոնից ավելի մարդ)։

☆ Երկրում մտցվել է պարտադիր, ձրի ընդհանուր տարրական կրթություն։ 1958 թվականին համարյա վերացվել է անգրագիտությունը։

☆ Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում



գործում են 6 բարձրագույն ուսումնական հաստատություններ և պրոֆեսիոնալ դպրոցներ, որտեղ սովորում են մոտավորապես 16 հազար մարդ։ Սոցիալիստական երկրներում սովորում են 1,500-ից ավելի ուսանողներ։ Դպրոցներում սովորում են 1,5 միլիոն երեխաներ։

☆ Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում տպագրվում են 33 անուն թերթեր և ամսագրեր, 287,500 օրինակ ընդհանուր տիրաժով։

☆ Ֆրանսիական տիրապետության վերջում երկրում կային 147 բժիշկներ։ 150 հազար բնակչին հասնում էր 1 բժիշկ։ Հիվանդանոցային մեկ մահճակալը հասնում էր 2000 մարդու։

☆ Ներկայումս ՎԴՌ-ում ստեղծված են 264 նոր հիվանդանոցներ, գյուղական վայրերում՝ 594 բուժման կետեր, ստեղծվել են նաև 924 ծննդատներ։ Հանոյում գործում է սովետական հիվանդանոցը՝ 150 մահճակալով։ Այժմ ՎԴՌ-ը կառուցում և սարքավորում է նոր հիվանդանոցներ։ Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում ներկայումս աշխատում են ավելի քան 8000 բուժաշխատողներ՝ դա 10 անգամ ավելի է, քան գաղութային ռեժիմի ժամանակ։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՍԵՊՏԵՄԲԵՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Բարձր ցուցանիշներով կատարենք ստանձնած պարտավորությունները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Կույբիշևի հիդրոէլեկտրակայանի շինարարության ավարտմանը նվիրված միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի օգոստոսի 12-ի համարում։*

Երկրորդ եռամսյակում աշխատել լավ, ժամկետից շուտ կատարել տարեկան պլանը, *Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի ակտիվի ժողովը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 26-ի համարում։*

Տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու համար, *նյութեր արտադրական հաջողությունների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 31-ի համարում։*

## 2. ՍՍՌՄ և մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության նոր հաջողությունները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրո-



նական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1958 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 25-ի համարում։*

Մեծ վերելք, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 25-ի համարում։*

Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1958 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի օգոստոսի 13-ի համարում։*

## 3. Քիմիան ծառայում է ժողովրդի բարօրությանը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ժողովրդական տնտեսության մեջ քիմիական արդյունաբերության նշանակության և նրա զարգացման հեռանկարների մասին, *ՍՄԿԿ Կենտկոմի Մայիսյան պլենումին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 10-ի համարում։*

Քիմիական արդյունաբերության հետագա զարգացման համար, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 31-ի համարում։*

Քիմիան մասսաներին, *զրույց քիմիական նյութերի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 25-ի համարում։*

Քիմիան ի սպաս դնել ժողովրդի բարօրության գործին, *«Լենինյան ուղիով» ամսագրի 1958 թվականի 6-րդ համարի առաջնորդողը։*

## 4. Բերքը հավաքենք առանց կորստի

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ստավրոպոլի երկրամասի կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների, սովխոզների, նորոգման տեխնիկական կայանների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների դիմումը ՍՍՌ Միության գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 11-ի համարում։*

Վճռական պայքար բերքի կորուստների դեմ, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 26-ի առաջնորդողը։*

Բերքը կհավաքենք արագ ու անկորուստ, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 7-րդ համարում։*

## 5. Արդյունավետ օգտագործենք գյուղատնտեսական տեխնիկան

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Գյուղատնտեսական մեքենայացումը, *ՍՄԿԿ XX համագումարին տված զեկուցումից, էջ 94—97, Հայպետհրատ, 1956։*

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մե-



քենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին, *ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 28-ի համարում։*

Մրցության ելեք, ընկեր կոմբայնավարներ, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 10-ի առաջնորդողը։*

Լավագույն ձևով կազմակերպել գյուղատնտեսական մեքենաների խնամքն *ու պահպանումը, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 7-րդ համարում։*

## 6. Ավելի շատ կաթնամթերք երկրին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, *ՍՄԿԿ XX համագումարին տված զեկուցումից, էջ 88—93— Հայպետհրատ, 1956։*

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության աշխատողների սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 16-ի համարում։*

ՀՐ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ— Առատ կեր անասուններին, *զրույց, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1958 թվականի 14-րդ համարում։*

Անասնաբուծություն, *նյութեր ավելի շատ միս, կաթնամթերք ստանալու մասին, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 7-րդ համարում, էջ 15—21։*





### 7. Նոր ուսումնական տարին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հաջողությամբ նախապատրաստվել նոր ուսումնական տարվան, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 11-ի առաջնորդողը։*

Շ. ՍԻՄՈՆՅԱՆ— Դպրոցի աշխատանքի բարելավման մի քանի հարցեր, *տպագրված «Սովետական մանկավարժ» ամսագրի 7-րդ համարում։*

### 8. Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հռչակումը:

### 9. Տանկիստների օրը:

### 10. Բուլղար ժողովրդի ազգային տոնը՝ Ազատության օրը:

### 11. Ածխահատի օրը:

### 12. Սովետական Միությունը պայքարում է պատերազմի հրձիգների դեմ:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Կույբիշևի հիդրոէլեկտրակայանի շինարարության ավարտմանը նվիրված միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի օգոստոսի 12-ի համարում։*

Խաղաղության և սոցիալիզմի ուժերը մեծ հաղթանակ կտանեն, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի օգոստոսի 6-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---


Ի տ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ